Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 11 ՀՈՒՆԻՍ - 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ՍՄԿՊ ղեկավարությամբ մեր անծայրածիր Հայրենիքի ժողովրդական մասսաների ջանքերով առաջինը մարդկության պատմության մեջ ստեղծվեց բազմազգ Սովետական Սոցիալիստական պետությունը՝ ամբողջ առաջադեմ և խաղաղասեր մարդկության հզոր հենարանը։ Սովետական պետությունը իր գոյության առաջին իսկ օրից հռչակեց և կենսագործեց մեր երկրի տերիտորիայում ապրող, առաջներում ցարիզմի դարավոր ճնշման տակ գտնվող բոլոր ազգերի և ժողովուրդների լիակատար ազատությունն ու իրավահավասարությունը։ Հենց այդ հանգամանքն էլ հիմք հանդիսացավ սովետական երկրի ժողովուրդների եղբայրական միության ստեղծման համար։

Ազգային հարցի լուծումը մեր երկրում ընթացավ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ։ Սովետական ազգային քաղաքականությունը ծնվեց ու զարգացավ մեր երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հետ միասին։ Հոկտեմբերյան պատմական գրոհի ժամանակ ուս-ուսի էին ընթանում Պետրոգրադի և Մոսկվայի, Պուտիլովի և Ուրալի գործարանների բանվորները, բազմազգ Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները հանուն իրենց ազատագրման։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան Լենինի և Ստալինի ղեկավարությամբ գլխավորեց մասսաների ստեղծագործական բուռն խանդավառությունը և նախառևոլյուցիոն խեղճ ու անզոր Ռուսաստանը դարձրեց աշխարհի ամենահզոր սոցիալիստական պետությունը։

Սոցիալիզմի հաղթանակի պայմաններում արմատական փոփոխություններ տեղի ունեցան ՍՍՌՄ-ում նաև ազգային փոխհարաբերությունների բնագավառում։ Շահագործող դասակարգերի լիկվիդացումը հանգեցրեց անխախտ բարեկամության հաստատմանը սովետական սոցիալիստական ազգերի միջև։ ՍՍՌՄ ժողովուրդների համագործակցության բազայի վրա ինտերնա-



ցիոնալ դաստիարակությունը դարձավ ազգերի բարեկամության ու փոխադարձ օգնության հզոր գործոն։

Սոցիալիստական տերության բոլոր ազգերի համախմբման գործում ականավոր դեր է պատկանում ռուս մեծ ժողովրդին՝ ՍՍՌՄ իրավահավասար ժողովուրդների մեջ առաջին ժողովրդին։

Ռուս մեծ ժողովուրդը մարդկությանը ցույց տվեց փոխադարձ օգնության և բարեկամության անգերազանցելի օրինակներ բոլոր ազգերի ու ժողովուրդների նկատմամբ՝ թե մեր Հայրենիքում, և թե նրա սահմաններից դուրս։

Մեր երկրում սոցիալիստական ազգերի բարեկամության շնորհիվ ծաղկում է Սովետական մեծ ու հզոր տերությունը։ Սոցիալիստական փոխադարձ օգնությունը նորմա, կանոն, սկզբունք է դարձել ՍՍՌՄ ժողովուրդների հարաբերություններում, ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և արվեստի բոլոր բնագավառներում։ Այսպես, օրինակ, երբ Ղազախստանում ստեղծվում էր մետալուրգիական արդյունաբերություն, նրա համար կադրեր էին պատրաստում Ուրալի գործարանները։ Կամ՝ վրացական երիտասարդ մետալուրգիայի կադ-

ները պատրաստվում էին Ուկրաինայի գործարաններում։ Առաջին ղազախ պողպատաձույլ Թաու Ալթիբեկ Դաթիբաևը պողպատաձուլության արվեստը սովորեց ուկրաինացի պողպատաձույլ Իվան Պոպովից։ Բաշկիրիայի նավթահանքերի յուրացմանն օգնեցին Բաքվի և Գրոզնու նավթագործ բանվորները։ Ուզբեկստանում տեքստիլ արդյունաբերության ստեղծմանն օգնում էին Իվանովոյի ջուլհակները։ Միմյանց փոխադարձ արտադրական-տեխնիկական օգնություն են ցույց տալիս Դոնբասի և Կուզբասի ածխահատները, Մինսկի և Ստալինգրադի շինարարները, Գորկու և Քութայիսիի ավտոմոբիլաշինարարները։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, մեր մարդկանց դաստիարակումը ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամության ոգով, Սովետական Միության ժողովուրդների ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի և մեր Հայրենիքի մյուս ժողովուրդների նկատմամբ սիրո զգացմունքի դաստիարակումը հանդիսացել և հանդիսանում է պարտիական, սովետական ու հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։



Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները բազմակողմանի աշխատանք են տանում մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ։ Նրանց նախաձեռնությամբ ռեսպուբլիկայի մի շարք ձեռնարկություններ, կոլտնտեսություններ, գիտական հիմնարկներ սերտ համագործակցություն են ստեղծել եղբայրական ռեսպուբլիկաների ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և գիտական հիմնարկների հետ, որը մեծ նշանակություն ունի մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության գործում։ Այսպես, օրինակ, Երևանի Կաշվի գործարանի բանվորների կոլեկտիվը, պարտկազմակերպության նախաձեռնությամբ, սոցիալիստական մրցության պայմանագիր է կնքել Թբիլիսիի Կաշվի գործարանի կոլեկտիվի բանվորների հետ։ Հայէներգոյի կոլեկտիվը սոցիալիստական մրցության մեջ է մտել Վրացէներգոյի և Ուզբեկէներգոյի հետ։ Հայէներգոյի պարտկազմակերպությունը պաշտպանելով և զարգացնելով կոլեկտիվի նախաձեռնությունը, հասավ այն բանին, որ բաժինները և ծառայությունները սոցիալիստական մրցության պայմանագրեր են կնքում եղբայրական ռեսպուբլիկաների հետ, ստուգում են դրանց

կատարումը և արդյունքների մասին իրազեկ դարձնում ամբողջ կոլեկտիվին։ Փորձի այդ փոխանակումը օգնում է Հայէներգոյի աշխատողներին՝ ամրապնդելու ինտերնացիոնալ կապերը։

Սոցիալիստական մրցումը լայն ծավալ է ստացել Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաների ( կոլտնտեսականների միջև։ Այսպես, օրինակ, Իջևանի շրջանի ծխախոտագործները մրցում են Ադրբեջանական ՍՍՌ-ի Ղազախի շրջանի ծխախոտագործների հետ, Արտաշատի բամբակագործները՝ Նախիջևանի ԱՍՍՌ-ի Նորաշենի շրջանի բամբակագործների հետ և այլն։

Մրցության պայմանագրերը ստուգելու համար հաճախ եղբայրական ժողովուրդների ներկայացուցիչները հանդիպումներ են ունենում, որոնք վեր են ածվում ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության մի վառ ցույցի, օգնում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործի հաջող կազմակերպմանը։

Պարտիական կազմակերպությունները ագիտատորների և պրոպագանդիստների միջոցով պետք է սիստեմատիկաբար մասսայականացնեն եղբայրական ռեսպուբլիկանե-



րի արդյունաբերական ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների մրցության արդյունքները և հասնեն այդ ժողովուրդների աշխատավորների միջև ստեղծված կապերի հետագա է՛լ ավելի ամրապնդմանը։ Ինտերնացիոնալ սերտ համագործակցություն է հաստատվել եղբայրական ռեսպուբլիկաների գիտնականների միջև, որը նպաստում է ռեսպուբլիկայի երիտասարդ գիտական կադրերի ինտերնացիոնալ դաստիարակությանը։ Վերջերս Երևանում տեղի ունեցավ Անդրկովկասյան գիտական կոնֆերանս՝ նվիրված գինեգործության և այգեգործության հարցերին։ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան Ադրբեջանական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հետ միասին 1952 թվականին Երևանում գիտական կոնֆերանս անցկացրեց՝ նվիրված Անդրկովկասի ռեսպուբլիկաներում գեոմորֆոլոգիական հետազոտությունների արդյունքների և հետագա խնդիրների քննարկմանը։ Ինտերնացիոնալ դաստիարակության գործում մեծ դեր է խաղում փոխադարձ օգնությունը գիտական կադրերի պատրաստման ուղղությամբ։

Հայաստանի գիտնականները գործնական մասնակցություն են ունենում մեր Հայրե-

նիքի ժողովուրդների ստեղծագործական համագործակցությանը։ Ադրբեջանական ականավոր գիտնական Մոհամմեդ Նասրեդդինի ծննդյան 750-ամյակի առթիվ Մոսկվայում կայացած գիտական սեսիայում «Աստղային ասոցիացիաները» զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Վ. Համբարձումյանը։ Աշխատավորները մեծ հետաքրքրությամբ են լըսում Սովետական պետության ազգային քաղաքականությանը, ժողովուրդների բարեկամությանը, սովետական իդեոլոգիային, գիտության և կուլտուրայի բնագավառում եղբայրական ռեսպուբլիկաների նվաճումներին վերաբերող դասախոսությունները։ Պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ սիստեմատիկորեն, ինչպես օրինակ Պոլիտեխնիկ ինստիտուտում, Կիրովի անվան գործարանում, Ավտոդողերի գործարանում և մյուս ձեռնարկություններում, հիմնարկություններում ու կոլտնտեսություններում անց են կացվում դասախոսություններ «Մարքս-լենինյան ուսմունքը ազգային հարցի վերաբերյալ», «Ի. Վ. Ստալինի «Ազգային հարցը և լենինիզմը»



աշխատություն, «Հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը», «Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի ժողովուրդների բարեկամությունը» և այլ թեմաների շուրջը։

Ժողովուրդների բարեկամությունը, նրանց եղբայրական համերաշխությունը, փոխադարձ օգնությունը և համախմբվածությունը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ու Սովետական կառավարության շուրջը՝ մեր ժողովրդի հիանալի առանձնահատկություններից մեկն է։

Ամբողջ աշխարհի ժողովուրդները իրենց հայացքը հառել են մեր Հայրենիքին։ Դաստիարակված պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով՝ սովետական մարդիկ հարգում են բոլոր մյուս ժողովուրդների ազատությունը, ազգային անկախությունը, միշտ հանդես են բերում բոլոր ժողովուրդների հետ հաշտ ապրելու իրենց ձգտումը։

Սովետական Միության շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի երկրները ազատվեցին իմպերիալիստական տերությունների ինտերվենցիայից։ ՍՍՌՄ օգնության շնորհիվ այդ երկրները ամրապնդեցին իրենց պատմական նվաճումները և հաղթականո-

րեն առաջ են ընթանում սոցիալիզմի ուղիով։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները, պրոպագանդիստները և ագիտատորները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն բանվորների և ծառայողների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին, սիստեմատիկաբար պայքարեն բուրժուական նացիոնալիզմի և կոսմոպոլիտիզմի բոլոր ռեցիդիվների դեմ, մոբիլիզացնեն բոլոր ուժերը կենսագործելու մեր պարտիայի Կանոնադրության պահանջը՝ հասարակության անդամներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և բոլոր երկրների աշխատավորների հետ եղբայրական կապեր հաստատելու ոգով, ամեն կերպ ամրապնդել սովետական Հայրենիքի ակտիվ պաշտպանությունը նրա թշնամիների ագրեսիվ գործողություններից։

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

## ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ ԵՎ ԿԵՐԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՈՒ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ

Գյուղատնտեսության բնագավառի աշխատողների գլխավոր խնդիրներից մեկը անասունների հանրային գլխաքանակի հետագա ավելացումն է՝ նրա մթերատվության միաժամանակյա զգալի աճի հետ մեկտեղ։ Հինգերորդ հնգամյակում նախատեսված է կոլտնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 36—38 տոկոսով, կովերինը՝ մոտավորապես 2 անգամ, ոչխարներինը՝ 75—80 տոկոսով և այլն։ Հնգամյակի ընթացքում 80—90 տոկոսով ավելանալու է մսի ու ճարպի արտադրանքը, մոտավորապես 2—2,5 անգամ ավելանալու է բուրդը։ Կոլտնտեսությունները և սովխոզները երկրին կտան մեծ քանակությամբ կաթնամթերք և թեթև արդյունաբերության համար հումք։ Այդ առաջադրանքնե-

րը կատարելու և գերակատարելու համար հարկավոր է ստեղծել կերի կայուն բազա։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում շուտով սկսվելու են խոտհնձի և կերերի սիլոսացման մասսայական աշխատանքները։

Ընթացիկ գյուղատնտեսական տարում կոլտնտեսությունները կատարելու են 250 հազար հեկտար բնական և ավելի քան 75 հազար հեկտար ցանովի խոտհարքների հունձ։

Այդ լուրջ և կարևորագույն առաջադրանքը ժամանակին կատարելով, կոլտնտեսություններում կստեղծվի կերի կայուն բազա և կապահովվի 1953/1954 թվականի ձմեռային շրջանում անասունների անկորուստ ձմեռումը, որը և վճռական պայման է հանդիսանում անասնապահության հետագա զարգացման, անասունների մթերատվության բարձրացման համար։

Այժմ գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև խնդիր է դրվում՝ խոտհնձի և սիլոսացման աշխատանքները հիմնականում ավարտել սեղմ ժամկետում, մինչև հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի սկսելը։

Պետական նշանակություն ունեցող այդ



կարևոր խնդիրն իրականացնելու համար անհրաժեշտ է մոբիլիզացնել կոլտնտեսային աշխատավորների և մեխանիզատորների բոլոր ուժերը, օգտագործել տնտեսության բոլոր հնարավոր միջոցները։

Խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքների հաջող կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է լրիվ կարողությամբ օգտագործել մեքենա-տրակտորային և մեքենա-անասնապահական կայանների գյուղատնտեսական մեքենաները։ Այս տարի մեքենա-տրակտորային և մեքենա-անասնապահական կայանները հնձելու են ավելի քան հարյուր հազար հեկտար խոտհարք։ Այդ առաջադրանքը կատարելու և գերակատարելու համար ստեղծված են անհրաժեշտ պայմաններ, այն է՝ ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային և մեքենա-անասնապահական կայանները հագեցված են նորագույն մեքենաներով և նրանց պահեստի մասերով։

Խոտհնձի աշխատանքների հաջող կատարումը մեծ չափով պայմանավորված է նաև կերհայթայթման և դաշտավարական բրիգադների ներսում աշխատանքի ճիշտ դասավորումից՝ հնձվորների, հավաքողների, սայլապանների և օժանդակ ուժերի ճիշտ

դասավորումից՝ ըստ աշխատանքի տեղամասերի։

Յուրաքանչյուր բրիգադա և օղակ պետք է որոշակի իմանա իր աշխատանքի վայրը։ Դրա համար հարկավոր է մինչև խոտհնձի սկսելը ինչպես բնական, այնպես էլ ցանովի խոտհարքներն ու բոլոր այն տարածությունները, որտեղ հնարավոր է խոտհունձ կատարել, նախօրոք ամրացնել բրիգադաներին։

Անցյալ տարի Ղափանի, Սիսիանի, Մեղրու շրջանների որոշ կոլտնտեսություններ խոտհնձի և սիլոսացման աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով չկարողացան կուտակել անհրաժեշտ քանակությամբ կերի պաշար, որը և մեծ դժվարություններ ստեղծեց հանրային հոտի ձմեռումը հաջող կազմակերպելու գործում։

Այդ սխալը չկրկնելու համար հարկավոր է, խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքներն սկսելուց 10 օր առաջ բոլոր բրիգադաներն ապահովել պահանջվող քանակությամբ խոտհնձի մեքենաներով, ձեռքի գործիքներով, գերանդիներով, եղաններով, փոցխերով, սրաքարերով, պարաններով և այլ օժանդակ ինվենտարով ու փոխադրական միջոցներով։



Խոտհունձը և կերերի սիլոսացումը սկսելուց առաջ կոլտնտեսության վարչությունը գյուղատնտեսական մասնագետների օգնությամբ կազմում է խոտհնձի և սիլոսացման աշխատանքների օրացուցային պլան՝ հնգօրյակներով։

Օրացուցային պլանի մեջ անհրաժեշտ է նախատեսել բոլոր հնձող մեքենաների ու գործիքների, աշխատող ձեռքերի լրիվ օգտագործումն ու ճիշտ դասավորումը, աշխատանքն սկսելու ու ավարտելու ժամկետները։

Նպատակահարմար է աշխատանքի օրացուցային պլանը քննության առնել կոլտնտեսականների ընդհանուր ժողովում, ուշադիր կերպով հաշվի առնել կոլտնտեսականների առաջարկությունները՝ խոտհունձը արագացնելու, մեծ տարածությունների վրա խոտհունձ կատարելու, խոտհարքային նոր աղբյուրներ ընդգրկելու վերաբերյալ։

Աշխատանքային բարձր կազմակերպվածությունը, ամուր կարգապահությունը և ճիշտ կազմված օրացուցային պլանը հնարավորություն կստեղծեն խոտհնձի և սիլոսացման աշխատանքները ավարտել ոչ միայն սահմանված ժամկետին, այլև կու-

տակել պլանով նախատեսվածից ավել կերի պաշար։

Խոտհունձը պետք է կատարել հիմնական խոտակազմի ծաղկման սկզբնական շրջանում, սեղմ ժամկետում։ Թույլ չտալ, որ խզում առաջանա խոտհնձի, խոտի չորացման, փոխադրման ու դիզման աշխատանքների միջև։ Այդ գործին մեծ չափով կարող է օգնել առաջավոր բրիգադների և օղակների անցյալ աշխատանքի հարուստ փորձը։ Հարկավոր է միայն այդ առաջավոր փորձը մասսայականացնել, հասցնել խոտհնձի ֆրոնտում աշխատող յուրաքանչյուր կոլտնտեսականի, պայքար ծավալել պլանների գերակատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով պետք է խստորեն կիրառել անհատական գործարքի սկզբունքը։ Անհատական գործարքը միաժամանակ հնարավորություն է տալիս հետևել խոտհնձի որակին, կատարել աշխատանքի ճիշտ հաշվառում և, որ ամենակարևորն է, մեծ թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը։

Կերի մեծ պաշարներ կուտակելու համար հարկավոր է սոուգել, ուսումնասիրել



այն բոլոր աղբյուրները, որտեղից հնարավոր է կեր հայթայթել, իսկ այդպիսի հնարավորություններ շատ կան տեղերում։

Խոտհունձ պետք է կատարել այն բոլոր վայրերում, անտառային բացատներում, բարձր բերքատու արոտներում, միջնակներում, ճանապարհների եզրերին, որտեղ որ հնարավոր է։

Սիսիանի, Մարտունու, Նոր Բայազետի, Կիրովականի, Ապարանի շրջանների մի շարք առաջավոր կոլտնտեսություններ իրենց նախաձեռնությամբ անցյալում ջրովի ու ցածրադիր խոնավ բնական խոտհարքներում երկու անգամ խոտհունձ կատարեցին։ Անհրաժեշտ է աշխատանքի այդ պրակտիկան այս տարի լայն չափով կիրառել ռեսպուբլիկայի նաև մյուս կոլտնտեսություններում։

Այժմվանից պետք է նախապատրաստական աշխատանք կատարել անասունների ձմեռանոցներում կեր կուտակելու համար։ Յուրաքանչյուր ոչխարի համար պետք է կուտակել մեկից մինչև մեկ ու կես ցենտներ կեր, որպես ապահովագրական ֆոնդ։

Անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու և մթերատվությունը բարձրացնե-

լու գործում մեծ նշանակություն ունի հյութալի կերերից սիլոսի պատրաստումը: Սիլոսը, որպես արժեքավոր կեր, լավ պատրաստելու դեպքում, նրա մեջ լրիվ պահպանվում է կանաչ մասսայի սննդարար հատկությունը, որը և շատ կարևոր է կաթնատու կովերի և մանավանդ մատղաշ անասունների համար:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այս տարի պետական պլանի համաձայն պատրաստվելու է անցյալ տարվանից 40 հազար տոննա ավելի սիլոս և կուտակվելու են մեծ քանակությամբ արմատապտուղներ (ճակնդեղ, կարտոֆիլ և այլն):

Պետական այս առաջադրանքը կատարելու համար անհրաժեշտ է ժամանակին ավարտել պլանով նախատեսված սիլոսային աշտարակների կառուցումը, վերանորոգել ու կարգավորել սիլոսային հորերը, խրամատները, կոլտնտեսություններում ու ՄՏՍ կայաններում եղած սիլոսահատ մեքենաները: Ցածրադիր շրջաններում սիլոսի պատրաստման աշխատանքը պետք է սկսել ավելի վաղ, որպես հումք օգտագործելով մոլախոտերը, վայրի բույսերը, բանջարաբոստանային կուլտուրաների մնացորդները:



Արմատապտուղների ցանքի պլանները կատարելուց բացի, այժմվանից հարկավոր է կազմակերպել նրանց մշակությունը, քաղհանը, փխրեցումը՝ բարձր բերք ստանալու համար:

Խոտհնձի և կերերի սիլոսացման պլանների կատարման և գերակատարման գործում խոշոր դեր է խաղում աշխատանքի ճիշտ կազմակերպումը:

Այն կոլտնտեսականները, որոնք գերակատարում են խոտհնձի և կերերի սիլոսացման առաջադրանքները, հիմնական աշխօրերով վարձատրվելուց բացի, ստանում են հնձված և կուտակված անասնակերի որոշ մասը բնավարձով— խոտով, որպես լրացուցիչ վարձատրություն:

Լրացուցիչ վարձատրությունը տրվում է, խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքները ավարտելուց հետո, տվյալ տեսակի անասնակերերը կոլտնտեսության վարչության կողմից ընդունելուց և մուտք անելուց հետո:

Լրացուցիչ վարձատրությունը տրվում է, բրիգադայի, օղակի կոլտնտեսականներին՝ խոտհնձի և սիլոսացման ժամանակ նրանց վաստակած աշխօրերին համապատասխան:

Լրացուցիչ վարձատրության ճիշտ կիրառումը կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, կապահովի կերի լրիվ կուտակումը՝ լավագույն ժամկետներում։

Այս օրերին նոր թափով պետք է ծավալել սոցիալիստական մրցությունը խոտհընձի և կերերի սիլոսացման աշխատանքները բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար, պարբերաբար մասսայականացնելով մրցության արդյունքները, առաջավոր հնձվորների, մեքենավարների աշխատանքի դրական փորձը, օգնել ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։

Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ 19-րդ համագումարի որոշումները, կոլտնտեսականները ուժ ու եռանդ չեն խնայի և պատվով կկատարեն անասնաբուծության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության դիրեկտիվները։

Ա. ԴԱՎԹՅԱՆ
(ագրոնոմ)

---



# ԳՈՐԾԱՐԱՆԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄ Է ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԵԽՆՈԼՈԳԻԱՆ

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ 19-րդ համագումարի դիրեկտիվներում նախատեսված է արդյունաբերական արտադրության հետագա վերելքի պլանին համապատասխան արդյունաբերության մեջ պետական կապիտալ ներդրումները, 1946—1950 թվականների համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 2 անգամ, ինչպես նաև նոր ձեռնարկությունների և ագրեգատների գործարկմանը զուգընթաց ապահովել գործող ձեռնարկությունների կարողությունների ավելացումը՝ նրանց վերակառուցման, նոր սարքավորումների տեղադրման, արտադրության մեքենայացման ու ինտենսիֆիկացման և տեխնոլոգիական պրոցեսների բարելավման հաշվին։

Հինգերորդ հնգամյա պլանի խնդիրների կատարման համար անհրաժեշտ է բարձրացնել գյուտարար և ռացիոնալիզատոր ին-

ժեներների, տեխնիկների, բանվորների և կոլտնտեսականների մասսայական շարժումը՝ արտադրության տեխնիկական հետագա կատարելագործման և ընդլայնման համար, բազմակողմանի մեքենայացման, աշխատանքի դյուրացման և նրա պայմանների հետագա առողջացման համար։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը մտնելով գործարար սոցիալիստական մրցության մեջ, մշակեց մի շարք միջոցառումներ, շենքերի, մեքենաների և ապարատուրայի կարողությունները լրիվ օգտագործելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու ուղղությամբ, որոնք ապահովում են արտադրության անընդհատ աճը։

Այսպես, օրինակ, այս տարվա մայիս ամսվա արտադրության ընդհանուր ծավալի կատարողականը, 1952 թվականի մայիս ամսվա համեմատությամբ, ավելացել է 10 տոկոսով, արտադրության հիմնական արտադրանքի թողարկումը ավելացել է 5,5 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը իջեցվել է 2,2 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունն բարձրացել է 12,6 տոկոսով և խնայված է հիմնական հումքը մոտ 1 տոկոսի չափով։



Նշված հաջողությունների մեջ մեծ դեր խաղաց գործարանի 1—9 ցեխի կոլեկտիվը, որը ՍՄԿԿ 19-րդ համագումարից հետո անցած 8 ամիսների ընթացքում տվել է 617 տոննա հիմնական նյութի խնայողություն, որի արժեքով հնարավոր է կառուցել մեկ քաղաքային տիպի միջնակարգ դպրոց՝ իր բոլոր կահավորումներով։

Գործարանի 30—30ա ցեխի կոլեկտիվը մոբիլիզացնելով ներքին ռեզերվները, 1953 թվականի 5 ամսվա պլանը կատարեց 120 տոկոսով, թողարկելով միմիայն գերազանց որակի արտադրանք։ Ցեխը միաժամանակ տնտեսեց 286 տոննա հիմնական նյութ։

1—8 ցեխի կոլեկտիվի ջանքերով, որին ղեկավարում է փորձված ինժեներ ընկ. Կ. Կանայանը, առանց կապիտալ ներդրումների ամիս առ ամիս ավելացվում է թողարկվող նյութի արտադրանքը։ Այդ ցեխի անվանի նորարարներ Ց. Հակոբյանը, Ժ. Շաղիկյանը, Ա. Ղարիբյանը, ցեխի պետ, ինժեներ Կանայանի ղեկավարությամբ կատարելագործում են արտադրության տեխնոլոգիական պրոցեսները, որի շնորհիվ գոր-

ծարանը այս տարվա 5 ամսվա ընթացքում ստացել է տասնյակ հազար ռուբլու օգուտ։ Գործարանը լուրջ հաջողությունների է հասել ռացիոնալիզատորների և նորարարների մասսայական շարժման շնորհիվ։

Միայն 1952 թվականին ռացիոնալիզատորական առաջարկություն են արել 220 բանվոր և 130 ինժեներ ու տեխնիկ։ Արտադրության մեջ արմատավորելով նրանց նորարարական առաջարկությունները, գործարանը մեկ տարվա ընթացքում ունեցել է 6 միլիոն 650 հազար ռուբլու խնայողություն։ Գնալով անընդհատ խտանում են նորարարների և ռացիոնալիզատորների շարքերը։ Բավական է ասել, որ միայն անցած 8 ամսում ռացիոնալիզատորների թիվն աճել է 55 մարդով։ Ռացիոնալիզատորների և նորարարների թվի այդպիսի աճմանը մեծ չափով նպաստել է ցեխերում սիստեմատիկաբար կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Ագիտատորները նորարարական յուրաքանչյուր առաջարկություն լայնորեն մասսայականացնում են ցեխերում, պատմելով այդ առաջարկներից բխող՝ արտադրության կատարելագործման, մեքենայացման, աշխատանքի դյուրացման և աշխատանքի պայմանների լավացման մասին,



այն մասին, թե որքան օգուտ է բերում այն մեր հարազատ պետությանը, թե ինչպես է պետությունը խրախուսում նորարարներին՝ տալով նրանց պարգևներ։

Գործարանի 1—3, 1—6, 1—8, 1—9, 30—30ա ցեխերում ագիտատորներ Ս. Մելիքսեթյանը, Վ. Մուրադյանը, Ս. Ազատյանը, Գ. Գուդկովը լայնորեն պրոպագանդում և մասսայականացնում են ռացիոնալիզատորներ Յ. Հակոբյանի, Ժ. Շաղիկյանի, Ա. Ղարիբյանի առաջարկությունները։ Ռացիոնալիզատորական աշխատանքների ծավալման շնորհիվ, միայն այս տարվա 5 ամսում, գործարանն ստացել է 195 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց մեծ մասը կիրառվում է արտադրության մեջ։

Անսպառ է բանվորների և ինժեներա-տեխնիկական անձնակազմի եռանդը էլ ավելի կատարելագործելու արտադրական պրոցեսները, փնտրելու և գտնելու նորանոր միջոցներ հումքի տնտեսման, ապարատների կարողությունների բարձրացման ուղղությամբ։

30—30ա ցեխի բանվոր Լ. Անտոնյանը բարձրացնելով հիմնական ապարատի արտադրողականությունը, գործարանին տալիս է տարեկան 10 հազար ռուբլու խնայողություն։ 1—3 ցեխի բանվոր Ս. Շահ-Ազիզ-

յանի առաջարկով ցեխի խողովակագծերը, որոնք ապարատների նորոգումից հետո անպետքանում էին, փոքր նորոգումից հետո երկրորդ և նույնիսկ երրորդ անգամ օգտագործվում են։ Այդ նորարարական առաջարկությունը տարեկան տալիս է վեց հազար ռուբլու խնայողություն։

Փականագործ Ն. Տխրունու ռացիոնալիզատորական առաջարկով երկարացվում է գլանող ապարատների աշխատանքային ժամկետը, որից և ստացվում է տարեկան հինգ հազար ռուբլու խնայողություն։

Բանվոր Ա. Պողոսյանի առաջարկով վերացվում է լրացուցիչ մշակման այն աշխատանքը, որ պահանջվում էր կատարել փականները և խողովակները թթվակայուն ծածկույթով պատելուց հետո։ Այս առաջարկը գործարանին տարեկան տալիս է 4 հազար ռուբլու տնտեսում։

Փականագործներ Ս. Մաթևոսյանը, Լ. Այրինյանը, Ս. Համբարձումյանը, բրիգադիր Հ. Վարդանյանը և շատ ուրիշներ արեցին մի շարք առաջարկներ, որոնց կիրառումով էլ ավելի անվտանգ են դարձվում տեխնոլոգիական պրոցեսները, դյուրացվում է բանվորների աշխատանքը։

Մի խումբ ինժեներներ՝ Խ. Պետրոսյանը,



Ս. Աղեկյանը, Վ. Չիչիկանովը, Զ. Մարգարյանը և Գ. Հակոբյանը առաջարկեցին կաթսայատան մոխիրը հեռացնել ոչ թե վագոնետկաներով, այլ ջրի հոսանքով՝ հատուկ խողովակների միջոցով։ Այս առաջարկության կիրառման հետևանքով անտեսվեց 8—10 բանվորական ձեռք, ավելի բարելավվեցին ցեխի առողջապահական պայմանները, բարձրացավ կաթսայի արտադրողականությունը, տալով տարեկան 780 հազար ռուբլու խնայողություն։

1—9 ցեխի ինժեներ Վ. Ոսկերչյանը առաջարկում է գործող ապարատներում շատ փոքր քանակով ավելացնել քիմիական մի նյութ, որը թույլ չի տալիս ապարատների շուտ կեղտոտվելուն, նրանց կեղտով բռնվելուն և մի քանի անգամ երկարաձգում է ապարատի աշխատաժամանակը։ Այս առաջարկի հետևանքով անտեսվում է ապարատների մաքրման և նորոգման վրա ծախսվող բանուժը, բարձրացվում է ապարատի արտադրողականությունը և խնայվում է հիմնական հումքը։

Տեխնիկ Գ. Սարգսյանի առաջարկով բարելավվեց մաքուր աղաջուր պատրաստելու բաժնի սխեման, որի շնորհիվ մոտ 30 տոկոսով ավելացավ այդ բաժնի արտադրո-

ղականությունը։ Նա առաջարկում է 1—3 ցեխում օգտագործել մինչ այդ թափթփուկ հանդիսացող ջրային գոլորշու կոնդենսատը, որը և տալիս է տարեկան 200 հազար ռուբլու տնտեսում։

Գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքներում մեծ դեր է խաղում գործարանի գիտահետազոտական լաբորատորիայի կոլեկտիվը, որի ղեկավարն է ինժեներ Ն. Կարապետյանը։

Մեր գործարանի գիտահետազոտական կոլեկտիվը արձագանքեց կաուչուկի Համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոչին և հիմա, շնորհիվ այդ կոլեկտիվների միահամուռ ջանքերի, մշակվում և շահագործման են հանձնվում հիմնական պրոցեսների, պրոդուկտների ստացման, տեխնոլոգիան կատարելագործելու նորանոր առաջարկներ։

Գործարանի կոլեկտիվի կողմից ուսումնասիրվում և կիրառվում է միութենական քիմիական գործարանների առաջավոր, անվանի բանվորների և ռացիոնալիզատորների աշխատանքի դրական փորձը, օրինակ Ալյոշին-Մեշնիկովայի (Լենինգրադի ռեզինոտեխնիկական պիտույքների գործարան), Դոնցով—Տարասովի (Վլադիմիրի քիմիա-



կան գործարան), Գալկինի (Յարոսլավլի ավտոդողերի գործարան) և ուրիշ առաջավորների փորձը, իսկ մեր գործարանի առաջավորների դրական փորձը լայն կիրառում է գտել Միության մի շարք գործարաններում, օրինակ, գործարանի ինժեներ Մ. Սալիբեկյանի առաջարկով կաուստիկ սոդա ստանալու Ռապիդ ապարատների չուգունե բարդ ձուլվածքի խողովակները փոխարինվել են երկաթյա պարզ կառուցվածքի խողովակներով, որի հետևանքով այդ ապարատի արտադրողականությունը ավելացավ 50 տոկոսով, գոլորշու ծախսը կրճատվեց 10 տոկոսով և նորոգման արժեքը իջեցվեց 8.000 ռուբլուց մինչև 2.000 ռուբլու։ Այս նորարարությունը կիրառություն է գտել Միության բոլոր կաուստիկ սոդա արտադրող գործարաններում։

Գործարանում արտադրության կատարելագործմանը, պրոցեսների մեքենայացմանը, աշխատանքի պայմանների լավացմանը մեծ չափով նպաստում է կադրերի որակավորումը, երիտասարդ կադրերի սիստեմատիկ վերապատրաստումը։ Ներկայումս գործարանում կազմակերպված են մի քանի ստախանովական դպրոցներ, որոնք ուսումնասիրում են առաջավորների աշխատանքի փոր-

ձը՝ արտադրողականությունը բարձրացնելու և արտադրական պրոցեսները կատարելագործելու ուղղությամբ։ Օրինակ՝ 2—3 ցեխում կազմակերպված է ստախանովական դպրոց, որտեղ ընդգրկված են 22 հոգի, որոնք ուսումնասիրում են ավագ մեքենավար Անդրեյ Օրլովի աշխատանքի առաջավոր մեթոդները, բարձրացնում են մեքենաների արտադրողականությունը։ 30—30-ա ցեխում կազմակերպված ստախանովական դպրոցում ընդգրկվածները ուսումնասիրում են բրիգադիր-ապարատավարներ Ս. Գյոզալյանի և Ս. Հարությունյանի աշխատանքի այն առաջավոր մեթոդները, որոնք իսպառ վերացնում են տեխնոլոգիական ռեժիմների խախտումները և նպաստում են արտադրողականության բարձրացմանը։

Այսպիսով, Կիրովի անվան գործարանի պարտիական կազմակերպության ղեկավարությամբ, պրոֆմիութենական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունները ծավալելով գործարար սոցիալիստական մրցություն, որակավորելով կադրերին, մասսայականացնելով առաջավորների աշխատանքի փորձը, այն դարձնելով ամբողջ կոլեկտիվի սեփականությունը, լայնորեն խրախուսելով և բանվորներին ու



ինժեներա-տեխնիկական անձնակազմին ընդգրկելով ռացիոնալիզատորական աշխատանքներում, հասել են արտադրական մի շարք բարդ պրոցեսների կատարելագործմանը, աշխատանքի պայմանների լավացմանը և դյուրացմանը, տալով հումքի, էներգիայի և օժանդակ նյութերի խնայողություն։

ՍՄԿԿ 19-րդ համագումարից անցած ժամանակաշրջանում Ս. Մ. Կիրովի անվան գործարանում արտադրանքը ավելացել է 10 տոկոսով, իսկ մի շարք կատարելագործումներ, որոնք արդեն առաջարկված են և գտնվում են մշակման ու կիրառման պրոցեսում, կապահովեն գործարանի արտադրանքի թողարկման ավելացումը 60 տոկոսով, որը կլինի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի ավանդը մեր ժողովրդի նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։

Ն. ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆ

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի
արտադրական բաժնի պետ, ինժեներ

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԲՐԻԳԱԴԱՅՈՒՄ

*Մեր երկրի ժողովրդական տնտեսության շահերը և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման խնդիրները պահանջում են էլ ավելի մեծ չափով ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։*

*Այդ կապակցությամբ ընկ. Գ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարին տված իր զեկուցման մեջ նշեց, որ բերքատվության բարձրացումը գլխավոր խնդիրն է հողագործության մեջ։*

*Ինչպես Սովետական Միության կոլտնտեսային բոլոր աշխատավորները, այնպես էլ Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի կոլտնտեսականները ջանք չեն խնայում և աշխատում են անձնվիրաբար, որպեսզի պատվով կատարեն գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու մասին պարտիայի և կառավարության*



*որոշումները։ Մեր կոլտնտեսությունը պարտավորություն է ստանձնել այս տարի խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 62 ցենտներ բերք, ծխախոտից՝ 19 ցենտներ, իսկ այգեգործական № 10 բրիգադան պարտավորվել է խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 71 ցենտներ և ծխախոտից՝ 28 ցենտներ բերք։*

*Այդ պարտավորությունների կատարումն ապահովելու գործում լուրջ աշխատանք են տանում բրիգադայի ագիտատորները։ Նրանք պարտկազմակերպության հանձնարարությամբ կոլտնտեսականների շրջանում պրոպագանդում և մասսայականացնում են առաջավորների աշխատանքի դրական փորձը, օգնում են բրիգադներին և կոլտնտեսականներին կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելու առաջավոր փորձի նվաճումները, կոլտնտեսականներին հանգամանորեն պարզաբանում են գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները, ինչպես նաև պրակտիկ այն խնդիրները, որ դրված են ռեսպուբլիկայի, շրջանի, կոլտնտեսության և իրենց բրիգադայի առջև։*

*Մեր կոլտնտեսության այգեգործական № 10 բրիգադայի ագիտատոր Զ. Հով-*

Հաննիսյանի կազմակերպած յուրաքանչյուր ագիտացիոն զրույցը կոլտնտեսականների հետ հետաքրքիր է և նպատակասլաց: Այսպես, օրինակ, վերջերս կոլտնտեսականներին պատմելով գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի ընդունած դիրեկտիվների մասին, նա զրույցի ընթացքում խելացի կերպով օգտագործեց հենց մեր կոլտնտեսությունից վերցրած փաստերը և կոլտնտեսականներին պարզաբանեց այն պրակտիկ խնդիրները, որ դրված է իրենց կոլտնտեսության և բրիգադայի առջև:

Այնուհետև նա հանգամանորեն խոսեց բրիգադայում սոցմրցման պայմանագրով ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին, այն, թե ով ինչպես է կատարում իր տված խոստումը, ինչ է անում մրցության մեջ հաղթող լինելու համար:

Որպեսզի ապահովվի բրիգադայի կողմից մշակվող գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների և հատկապես կոլտնտեսության ու բրիգադայի համար առաջատար կուլտուրաների՝ խաղողի ու ծխախոտի բարձր բերքատվությունը, բրիգադայի ագիտատորները հատուկ ուշադրություն են դարձնում առաջավոր փորձի արմատավորման վրա:



Բրիգադայի ագիտատորներն ուսումնասիրելով մրցության առաջավորներ Գ. Շահգելդյանի, Ա. Մնացականյանի, Մ. Հարությանի և Հ. Գյուրջյանի աշխատանքի դրական փորձը՝ այգեմասը մացառներից մաքրելու և այդ միջոցով հողի բերրիությունը բարձրացնելու ասպարեզում, սկսեցին այն լայնորեն պրոպագանդել ու մասսայականացնել կոլտնտեսականների մեջ: Առաջավոր փորձը ժամանակին պրոպագանդելու և մասսայականացնելու արդյունքը եղավ այն, որ բրիգադայի բոլոր 97 անդամներն էլ ընդօրինակեցին աշխատանքում առաջավորներին և սկսեցին մացառներից մաքրել բրիգադայի հողերը: Կարճ ժամանակում վերացվեց 31 հազար մացառ, որով կոլտնտեսությունը շահեց մի քանի հեկտար բերրի հող:

Կոլտնտեսային բրիգադայի ագիտատորներ Ջ. Գևորգյանը, Ջ. Հովհաննիսյանը և Ռ. Դանիելյանը օգտագործելով առաջավոր այգեգործների աշխատանքի փորձը և այգեգործության վերաբերյալ մասնագիտական նյութեր, հաճախակի զրույցներ են կազմակերպում խաղողի այգիների, պտղատու ծառերի և ծխախոտի մշակությունը բարելավելու մասին: Այսպես, օրինակ, գյուղատնտեսական տարվա սկզբին, երբ նոր էր սկսվել

այգեփորը, ագիտատորները բրիգադայի օղակներում զրույցներ կազմակերպեցին այգեէտի, պտղատու ծառերի ձևավորման և այգեփորի մասին, իսկ այժմ զրույցներ են կազմակերպում այգիների բուժման մասին, որովհետև կոլտնտեսությունում բուռն թափով առաջ են գնում այգիների բուժման աշխատանքները։ Արդեն ավարտված է այգիների առաջին և երկրորդ բուժումը, սկսվել է երրորդ բուժումը։

Այդ զրույցների ընթացքում այգիների ու յանքերի մշակությունը բարելավելու համար ագիտատորները ո՛չ միայն լայնորեն մասսայականացնում են առաջավոր փորձը, այլև օգնում են բրիգադիրին, օղակավարներին և կոլտնտեսականներին՝ արտադրության մեջ արմատավորելու այն։

Մեր կոլտնտեսության այդ բրիգադայի ագիտատորները աշխատանքի ուսանելի փորձ ունեն նաև խլլիշովկաների և ցուցադրական ագիտացիայի միջոցով առաջավոր փորձը բրիգադայում արմատավորելու գործում։ Բրիգադայում շաբաթական մեկից երկու անգամ ագիտատորները լույս են ընծայում խլլիշովկաներ, որտեղ մանրամասնորեն լուսաբանվում է առաջավոր աշխատողների լավագույն փորձը, բրիգադայի և օղակների



հաջողությունները, ինչպես նաև արվում են քննադատական դիտողություններ նկատվող թերությունների մասին։

Օրերս ագիտատոր Զ. Գևորգյանի օգնությամբ լույս տեսած դաշտային խլլիշովկայում լայնորեն լուսաբանվեց առաջավոր այգեգործ Ա. Բաղալյանի աշխատանքի փորձը, որը աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել խաղողի այգիների բուժման և գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու գործում։ Նույն խլլիշովկայում մի քանի օր հետո լուսաբանվեց Փ. Վարդանյանի և Տ. Գյոզալյանի կատարած լավագույն աշխատանքը, որոնք, հետևելով Ա. Բաղալյանի օրինակին, նույնպես բարելավել էին այգիների մշակությունը։

Կոլտնտեսականների շրջանում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու գործում խոշոր նշանակություն ունի ագիտատորներին ժամանակին հրահանգավորելը։

Ագիտատորներին հրահանգավորելու լավագույն միջոց է սեմինար պարապմունքը, ուր ագիտատորները մեթոդական և տեսական անհրաժեշտ օգնություն կամ ցուցումներ են ստանում հերթական զրույցի համար։

Պարտկազմակերպությունը շաբաթական

մեկից երկու անգամ ագիտատորների համար կազմակերպում է սեմինար պարապմունք, կամ հրահանգչական խորհրդակցություն, որտեղ աշխատանքի առավել դրական փորձ ունեցող ագիտատորները պատմում են, թե իրենք ագիտացիոն աշխատանքի ինչպիսի ձևեր և մեթոդներ են գործադրում և կոնկրետ ինչ հաջողությունների են հասել ագիտացիոն-քաղաքական աշխատանքի միջոցով։

Կոլտնտեսության № 10 բրիգադայի ագիտատոր Ռ. Դանիելյանը, Զ. Հովհաննիսյանը, Զ. Գևորգյանը սիստեմատիկաբար մասնակցում են սեմինար պարապմունքներին և հաճախակի ունկնդիրներին պատմում են իրենց կատարած աշխատանքի մասին։ Վերջերս տեղի ունեցած սեմինարում ագիտատոր Ռ. Դանիելյանը փորձի փոխանակման կարգով պատմեց, թե ինքը բրիգադայի կոլտնտեսականների հետ ինչպես է անցկացրել «Ծավալենք սոցիալիստական մրցությունը մեր կոլտնտեսության առջև դրված խնդիրները ժամանակին կատարելու համար» թեմայով զրույցը։ Բացի այդ, նույն բրիգադայի և մյուս բրիգադաների ագիտատորները սեմինար պարապմունքում պատմում են նաև այն զրույցների մասին, որ իրենք նախատե-



սում են առաջիկայում ունենալ կոլտնտեսականների հետ։

Ագիտատորներին լուրջ օգնություն է նաև այն, որ սեմինար պարապմունքներում պարբերաբար հանդես են գալիս նաև կոլտնտեսության ղեկավար աշխատողները՝ կոլտնտեսության վարչության նախագահը, նրա տեղակալը, ագրոնոմը և ուրիշներ։ Նրանք ագիտատորներին մանրամասնորեն տեղյակ են պահում գյուղատնտեսական պրակտիկ այն աշխատանքների մասին, որ առաջիկայում կատարվելու է կոլտնտեսությունում։

Կոլտնտեսային դաշտերում գնալով ուժեղանում է աշխատանքը։ Կոլտնտեսականները ջանք չեն խնայում այգիների ու ցանքերի մշակությունն էլ ավելի բարելավելու և բարձր բերք նվաճելու համար։ Այս օրերին ագիտատորներն ավելի են ուժեղացնում կոլտնտեսականների շրջանում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքը, մոբիլիզացնում են նրանց ուժերը կոլտնտեսության առջև դրված խնդիրները գերազանց կատարելու համար։

Վ. ՆԱԶԱՐՅԱՆ

Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպության քարտուղար

# ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*Սպառազինությունների մրցավազքը որպես մի ծանր բեռ ընկած է կապիտալիստական երկրների աշխատավորների լայն մասսաների ուսերին։ Այդ երկրների բնակչության կենսամակարդակն անընդհատ իջնում է, աճում է գործազրկությունը, կրճատվում է քաղաքացիական արտադրությունը, գյուղատնտեսությունն անկում է ապրում։ Պատերազմի պատրաստությունից մոնոպոլիստները դիզում են հսկայական շահույթներ, իսկ բանվորները և գյուղացիները գնալով ավելի են աղքատանում։*

*Կապիտալիստական երկրներում օրեցօրե վատթարանում է աշխատավոր գյուղացիության դրությունը։ Դա առանձնապես բնորոշ է Ամերիկայի Միացյալ Նահանգների համար, որտեղ բազմաքանակ մանր ֆերմերները քարշ են տալիս իրենց խղճուկ գոյությունը, քայքայվում են և շարունակ համալրում գործազուրկների բանակի շարքերը։*

*«Ամերիկյան ֆերմերը» գրքի հեղինակ Լի Ցոյնե-*



*րը գրում է. «Բոլոր ֆերմաների երեք հինգերորդականը չափազանց փոքր է, որպեսզի ընտանիքի գոյությունը պաշտպանի տանելի մակարդակի վրա։ Չորս միլիոն աշխատունակ ֆերմերների առաջ ծառացած է ավերական պրոբլեմը՝ ինչպես ապրել»։ Ամերիկյան պաշտոնական տվյալներով՝ ֆերմերի միջին եկամուտը արդեն 1951 թվականին հինգ անգամ պակաս էր ապրուստի այն նվազագույն արժեքից, որը հնարավորություն է տալիս հազիվ ծայրը ծայրին հասցնել։ Հետագա տարիներին ֆերմերների դրությունն է՛լ ավելի վատթարացավ»։*

*Մինեսոտի նահանգի ֆերմերների միության համագումարում ֆերմեր Դեն Տեյլորը հայտարարել է՝*

*«Մոնոպոլիաները միլիոններ են դիզում, իսկ մանր ֆերմերները թշվառանում են... Քայքայման հետևանքով ֆերմերներն ստիպված են մեկը մյուսի հետևից թողնել իրենց ֆերմաները։ Մեր օկրուգում բազմաթիվ ֆերմերներից միայն երեքն են մնացել։ Դրությունը հուսահատական է։ Այսպես շարունակել այլևս անհնարին է»։*

*Մինեսոտի նահանգը, հասկանալի է, բացառություն չի կազմում։ Հողային տարածությունները կենտրոնացվում են մի բուռ խոշոր ֆերմաների—կապիտալիստների ձեռքում։ Անցյալ տարի հրապարակված վերջին մարդահամարի ամենևին ոչ լրիվ տվյալների համաձայն՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում տասնհինգ տարվա ընթացքում ֆերմերների թիվը*

կրճատվել է մեկ և կես միլիոնով։ Այդ նշանակում է, որ կապիտալիստական մոնոպոլիաները ամեն տարի միջին հաշվով քայքայում են առնվազն հարյուր հազար ֆերմերական տնտեսություն։

Ամերիկյան գյուղատնտեսության մեջ գնալով ավելի ու ավելի են սրվում ճգնաժամային երևույթները։ Պահեստներում իրար վրա կուտակվում են գյուղատնտեսական մթերքների հսկայական պաշարներ, որոնք չեն սպառվում այն պատճառով, որ մոնոպոլիստները բարձրացրել են դրանց գները։ «Նյու-Յորք Թայմս» թերթը մեջ է բերել հողագործության մինիստրության տվյալները, որոնցից պարզ երևում է, որ ցորենի պաշարները անցյալ տարի 16 անգամ ավելի են եղել 1947 թվականի պաշարներից։ Գնորդ չի գտնում եգիպտացորենը, չնայած որ նրա ցանքատարածությունը կրճատվել է մոտ երեք միլիոն հեկտարով, պահեստներում ընկած է մնում նաև բամբակը և գյուղատնտեսական այլ հումքը։

ԱՄՆ-ի կառավարող շրջանները, ձգտելով հօգուտ մոնոպոլիստների շահերի պահպանել սննդամթերքների բարձր մանրածախ գները, պահեստներում փտեցնում են հսկայական «ավելցուկներ»։ Իսկ նույն այդ ժամանակ սիստեմատիկորեն ընկնում են այն գները, որոնցով կապիտալիստները ֆերմերներից գնում են նրանց աշխատանքի պտուղները։ Միայն անցյալ տարի այդ գներն ընկել են ավելի քան 12 տոկոսով։



Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1952 թվականին հացի մանրածախ գները 28 տոկոսով բարձր էին, քան 1947 թվականին, մսինը բարձր էր 26 տոկոսով, կաթինը՝ 18 տոկոսով և այլն։ Մանրածախ գների բարձրացումից ստացվող շահույթները մտնում են մոնոպոլիստների գրպանները, որոնք թալանում են թե՛ ֆերմերներին և թե՛ սպառողներին։ Այսպես, օրինակ, ամերիկյան սննդամթերքների մոնոպոլիստների կողմից վաճառվող կաթի և կաթնամթերքների գները 4—5,5 անգամ բարձր են այն գներից, որով նրանք գնել են նույն այդ մթերքները ֆերմերներից։

Այսպիսով, առերևույթ այնպիսի տպավորություն է ստեղծվում, թե իբր երկիրն ունի պարենի «ավելցուկներ», մինչդեռ միլիոնավոր աշխատավորներ սովի են մատնված։ Փրկություն որոնելով ագրարային ճգնաժամից, ամերիկյան էկոնոմիստները և քաղաքագետները մշակում են զանազան «նախագծեր», ինչպես այն, թե անհրաժեշտ է կրճատել ցանքատարածությունները։ Սակայն նմանօրինակ դեղատոմսերը չեն կարող, իհարկե, թեթևացնել ամերիկյան միլիոնավոր ֆերմերների աղետալի վիճակը։ Ամերիկյան ֆերմերների ռեալ եկամուտը վերջին հինգ տարում նվազել է 4 միլիարդ դոլարով։ Միայն անցյալ տարի բանկերին ունեցած նրանց պարտքերի ընդհանուր գումարը ավելացավ երկու միլիարդով և այս տարվա սկզբներին հասավ 14 միլիարդ դոլարի։

Մեծ դժվարություններ է կրում արևմտաեվրոպական երկրների գյուղացիությունը, երկրներ, որոնք հակառակ իրենց ժողովուրդների կամքի, ներքաշվել են Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ։ Միավորված Ազգերի Կազմակերպության Եվրոպայի համար էկոնոմիկական հանձնաժողովի վերջերս տեղի ունեցած սեսիայում նշվեց, որ Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի և մյուս երկրների գյուղատնտեսությունը չափազանց ողբալի վիճակի մեջ է, և որ դրա պատճառը սպառազինությունների մրցավազքն է։

Հայտնի է, օրինակ, որ Անգլիան պարենային մեծ դժվարություններ է կրում։ Երկրում մինչև այժմ էլ պահպանվում են մսի, յուղի և մյուս մթերքների քարտերը։ Այնուամենայնիվ, իշխանությունները պատերազմի համար կատարվող հսկայական ծախսերի պատճառով ի վիճակի չեն որևէ լուրջ միջոցի դիմել գյուղատնտեսության վիճակը բարելավելու համար։ Ցանքատարածությունները 1947 թվականի 5,5 միլիոն հեկտարից կրճատվել՝ 1950 թվականին հասցվել են 5 միլիոն հեկտարի։ Հաջորդ տարիներին տեղի էր ունենում ցանքատարածությունների հետագա կրճատումը և գյուղատնտեսական արտադրանքի արտադրության նվազումը։ Էկոնոմիկական դրության վերաբերյալ այս տարվա մարտին հրապարակված Միավորված Ազգերի Կազմակերպության Քարտուղարության զեկուցման մեջ բերվել են պաշտոնական տվյալներ,



որոնց համաձայն անգլիական գյուղատնտեսության արտադրանքը 1952 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, նվազել է 4 տոկոսով։

Անգլիական «Ֆայնենշլ Թայմս» թերթը անցյալ տարվա վերջերին գրել է. «Անգլիայում հարյուրավոր քառակուսի մղոն տերիտորիայի վրա, հազարավոր ֆերմաներում և հազարավոր գյուղերում գյուղական բնակչությունն ապրում ու աշխատում է այնպիսի պայմաններում, որոնք հիմնականում այն են, ինչ եղել են հարյուր տարի սրանից առաջ»։

Ֆրանսիայում հողի բարձր վարձավճարը և ուժից վեր հարկերը հանգեցնում են մանր ու միջակ գյուղացիների հողազրկմանը։ Իշխանությունները դիտավորյալ կերպով մերժում են նրանց վարկ տալ, մանր տնտեսությունների պահպանումը համարելով «իրենց չարդարացնող»։ 1947 թվականից մինչև 1952 թվականի սկզբներն ընկած ժամանակամիջոցում ավելի քան 800 հազար հեկտար հող մանր սեփականատերերի ձեռքից անցել է խոշոր հողատերերի ձեռքը։

Գյուղացիների մեծամասնությունը տառացիորեն մուրացկան է, ի վիճակի չլինելով բավարարել իր անգամ նվազագույն պահանջները։ Ֆրանսիայի գյուղատնտեսությունը գնալով ավելի ու ավելի անկում է ապրում։ Նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ Ֆրանսիայում ցորենի արտադրությունը կրճատվել է 13 տոկոսով, կարտոֆիլինը և վարսակի-

նը՝ 23 տոկոսով, այն ժամանակ, երբ երկրի բնակչության թիվն ավելացել է։

Իտալիայում 40 հազար կալվածատերեր ունեն 10 միլիոն հեկտարից ավելի հող, իսկ 2,5 միլիոն գյուղացիներ՝ ընդամենը 6 միլիոն հեկտար հող, նույնքան գյուղացիներ էլ ամենևին հողազուրկ են։ Երկրում կան կալվածատիրական շատ ամայի հողեր։ Ծանր վիճակում է գտնվում գյուղատնտեսական բատրակների հսկայական բանակը։ Ապրիլի 16-ին երկու միլիոն իտալական բատրակներ գործադուլ հայտարարեցին, պահանջելով բարձրացնել աշխատավարձը և գործազրկության նպաստ վճարել։ Գործադուլավորներին ակտիվ կերպով պաշտպանեցին միլիոնավոր կիսարարավորներ և մանր հողատերեր։ Մի շարք տեղերում կալվածատերերը՝ գործադուլի թափից ահաբեկված, պարտավորվեցին բատրակներին վճարել գործազրկության նպաստի պարտքերը։

Առանձնապես ծանր պայմաններում են ապրում գաղութային և կախյալ երկրների գյուղացիները, որոնք ենթարկվում են կրկնակի ճնշման՝ տեղական կալվածատերերի ու կապիտալիստների կողմից և գաղութարար իմպերիալիստների կողմից։

«Իմպերիալիստների երկարատև ճնշման և ֆեոդալական մնացուկների առկայության հետևանքով,— մատնանշեց ընկ. Գ. Մ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում տված զեկուցման մեջ,— գաղութա-



յին ու կախյալ երկրների էկոնոմիկան, հատկապես գյուղատնտեսությունը, գտնվում է անկման վիճակում։ Հնդկաստանում, Ինդոնեզիայում, Իրանում, Աֆրիկայի երկրներում տասնյակ միլիոնավոր մարդիկ ապրում են մշտական սովի պայմաններում, իսկ հսկայական թվով մարդիկ դարձել են սովամահության զոհ»։

Գաղութարարները զավթում են խոշոր հողային մասսիվները, թշվառության ու սովամահության մատնելով գյուղացիության միլիոնավոր մասսաներին։ Թունիսում, օրինակ, մշակելի հողերի 25 տոկոսը պատկանում է օտարերկրյա ընկերություններին ու գաղութատերերին։ Հարավ-Արևմտյան Աֆրիկայում գյուղացիներից խլված է լավագույն հողերի 40 տոկոսը։ Ամերիկյան «Յունայտեդ ֆրուտ կոմպանի» մոնոպոլիան Կենտրոնական Ամերիկայի երկրներում զավթել է երկուս ու կես միլիոն հեկտար հող։

Բրազիլիան ունի արգավանդ հողեր, որոնցից կարելի է ստանալ տարեկան երկու բերք։ Մինչդեռ միլիոնավոր բրազիլացիներ շարունակ սով են ապրում։ Այս տարվա գարնանը Բրազիլիայում սովն ընդգրկել էր մոտ 14 միլիոն մարդ։

Սովի հիմնական պատճառը՝ դա ժողովրդին ճնշելն է, նրա աղքատացումը։ Բրազիլիայի գյուղացիական բնակչության ճնշող մեծամասնությունը հողազուրկ է կամ այնքան քիչ հող ունի, որ դրանով չի կարող կերակրել իր ընտանիքը։ Միայն Սան-Պաուլո նահան-

գում կան մոտ 5 միլիոն հողազուրկ գյուղացիներ։

Իրանում մշակման համար պիտանի հողերի ավելի քան չորս հինգերորդը պատկանում է կալվածատերերին, կուլակներին, եկեղեցիներին և պետությանը։ Գյուղացիական ընտանիքների մինչև 60 տոկոսը հող չունի, իսկ 32 տոկոսը սակավահող գյուղացիներ են։ Գյուղացիները ստիպված են հողը վարձակալել կալվածատերերից ստրկային ծանր պայմանով։ Հավաքված բերքի $^1/_6$-ից մինչև $^1/_3$-ը ստանում են վարձակալողները, իսկ մնացածը տրվում է անկուշտ հողատերերին։

Եգիպտական 12 միլիոն գյուղացիներ— ֆելահներ համարյա նույնքան հող ունեն, որքան 12 հազար խոշոր հողատերեր։ Հողազուրկ և սակավահող գյուղացիների թիվը Եգիպտոսում հասնում է 70—80 տոկոսի։

Ֆեոդալական մնացորդները ամբողջ ուժով դրսևորվում են թյուրքական գյուղում։ Վարելահողերի երկու երրորդականն այստեղ պատկանում է 33 հազար կալվածատերերին։ Նրանցից շատերը, մանավանդ երկրի արևելյան շրջաններում, ունեն 30—40-ական գյուղ, ընդ որում՝ կալվածատերերը կարող են գյուղացիներին վաճառել աճուրդով՝ հողի հետ միասին։ Թյուրքիայում հողազուրկ և սակավահող գյուղացիների թիվը հասնում է 12 միլիոնի, որոնցից 6 միլիոնը, անգամ թյուրքական մամուլի խոստովանությամբ, մշտապես



սովի մեջ է։ Քայքայված հարյուր հազարավոր գյուղացիներ հեղեղում են թյուրքական քաղաքները՝ որոնելով որևէ պատահական վաստակ։

Հուսահատության հասցված թյուրք գյուղացիները պայքարի են ելնում՝ ընդդեմ ֆեոդալական կարգերի և կառավարության հանցավոր քաղաքականության։ Վերջին տարիները երկրում տեղի են ունեցել գյուղացիների կողմից կալվածատիրական հողերը բռնագրավելու և ժանդարմերիայի հետ զինված ընդհարման մեջ մտնելու հարյուրավոր դեպքեր։

Գնալով ավելի մեծ թափ է ստանում գաղութային և կախյալ երկրների աշխատավոր գյուղացիության պայքարը՝ հանուն իր կենսական իրավունքների։ Այդ պայքարը միաձուլվում է գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ընդհանուր ազատագրական պայքարի հետ, ժողովուրդների, որոնք լի են գաղութային ճնշմանը վերջ տալու, ազգային անկախության հասնելու, խաղաղությունը պաշտպանելու վճռականությամբ։

Դ. ԴԱՆԻԼՈՎ

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

Գինը 50 կոպ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 11 1953 г.

# БЛОКНОТ АГИТАТОРА

ՎՖ 02469 Պատվեր № 557 Տիրաժ 9500

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,
Կնունյանցի № 8, 1953 թ.։